# ԼԵՆԻՆՆ ԻՄ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Չի՞ եղել Լենինն իմ Հայաստանում,
Չի՞ տեսել հայոց լեռները հսկա։
Ո՛չ, նա եղել է, շրջել ամենուր,
Այս նորեկ գարնան ծնունդը վկա։
Եղել է, տեսել գետերը մեր խենթ,
Մեր վիշտն է չափել մտքով իր աննինջ,
Զրույց է արել մանկալ հորս հետ
Եվ արցունքները սրբել մայրիկիս։
Զինել է իմ հայ քաջերին անահ
Գաղափարներով վեհ ու իմաստուն,
Մեր ձեռքն է տվել դրոշն իր անմահ,
Որ Հայաստանս ապրի անտրտում։

Լենինը երկրիս խնդումն է անծայր,
Զուգել է հողս ծաղկունքով այս պերճ։
Նորանում է նա նորի հետ պայծառ,
Նորից մանկանում մանուկների մեջ։
Լենինը ծովն է մեր երազանքի,
Լենինն՝ օրերի մտորումը խոր
Եվ ղողանջումն է այն բյուրեղ զանգի,
Որ իմ աշխարհին ավետեց անդորր։
Լենինը հոգու անհունն է անամպ,
Նայում է հեռուն աչքով արևի,
Գարնա՛նն է ծնվում կարոտն անարատ,
Եվ նա ծնվել է գարնանը բարի։



Լենինը—ի՛մ մեջ է,
Քո՛ մեջ է,
Նրա՛ մեջ է:
Լենինը—կա՛ :

ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ

# ԼԵՆԻՆ

ՎԻՏԱՈՒՏԱՍ ԲԱՐԱՈՒՍԿԱՍ

ՔՈ ՍՈՒՐԲ ԱՆՈՒՆՆ ԵՆՔ
ԳՐԵԼ ՄԵՐ ՍՐՏՈՒՄ
ԼՈՒՍԵ ՏԱՌԵՐՈՎ,
ՈՐ ԴՈՒ ՄԵՐ ԿՅԱՆՔՈՒՄ
ԳՈՐԾՈՒՄ ՈՒ ԵՐԳՈՒՄ
ԱՊՐԵՍ ԴԱՐԵՐՈՎ:

ՈՐ ՔԵԶ ՀԵՏ ՄԻ ՕՐ
ՀՐԹԻՌՈՎ ՀԶՈՐ
ՍԼԱՆԱՆՔ ԼՈՒՍԻՆ
ԵՎ ԱՄԵՆՈՒՐԵՔ
ԽՆԴԱՆՔ ՈՒ ՏԽՐԵՆՔ
ՔԵԶ ՀԵՏ ՄԻԱՍԻՆ:

ՈՐ ՎԱՂ ԱՌԱՎՈՏ
ՃԱՄՓԵՔՈՎ ԾԱՆՈԹ
ՔԱՅԼԵՆՔ ԸՆԿԵՐՈՎ,
ՄԻՆՉԵՎ ԴՊՐՈՑ ԳՆԱՆՔ
ՈՒ ՎԵՐԱԴԱՌՆԱՆՔ
ՔԵԶ ՊԵՍ «ՀԻՆԳԵՐՈՎ»:

ՈՒԶՈՒՄ ԵՆՔ ՔԵԶ ՊԵՍ
ՍԻՐԵԼ, ՊԱՅՔԱՐԵԼ
ՈՒ ԼԻՆԵԼ ԱՐԻ
ԵՎ ՄԱՅՐ ՀՈՂԸ ՄԵՐ
ԶՈՒԳԵԼ, ԶԱՐԴԱՐԵԼ
ԳՈՐԾԵՐՈՎ ԲԱՐԻ:

Ռուս. թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ



Նկ. ՋԱՆՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ




## ԿՐԵՄԼՈՒՄ

Այդ օրը ոչնչով չէր տարբերվում մյուս օրերից: Ինչպես միշտ, առավոտյան Լենինը մտավ առանձնասենյակ և սկսեց աշխատել: Մինչդեռ դա 1918 թվականի ապրիլի 22-ն էր՝ Լենինի ծննդյան տարեդարձը Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակից հետո:

Ընդամենը կես տարի էր անցել հեղափոխության հաղթանակից: Իշխանությունն անցել էր բանվորներին ու գյուղացիներին:

Լենինը դարձավ Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ — այդպես էր կոչվում աշխարհում առաջին բանվորական կառավարությունը:

Առաջվա ընդհատակյա աշխատողները, հեղափոխական գործիչներն ու Լենինի զինակիցները դարձան ժողովրդական կոմիսարներ:

Երկիրն այդ ժամանակ, պատերազմի հետևանքով, քայքայված էր: Վրա էր հասել սովը: Գործարաններն ու ֆաբրիկաները չէին աշխատում, գնացքները կանգ էին առել:

Առաջին խորհրդային կառավարությունը հարյուրավոր մանր ու մեծ գործեր պետք է կարգավորեր: Ժողովրդական կոմիսարները չափազանց շատ աշխատանք ունեին: Աշխատում էին նրանք առանց ջանքեր խնայելու: Նիստերից մեկի ժամանակ ժողովրդական կոմիսարներից մեկը ուշագնաց եղավ: Բժիշկները գտան, որ սովից է: Ահա թե ինչպիսի դժվար ժամանակներ էին:

Ժողովրդական կոմիսարների խորհուրդը գումարվում էր համարյա ամեն օր, իսկ երբեմն էլ՝ օրը երկու անգամ:

1918 թվականի ապրիլի 22-ին էլ, սովորականի նման, ճիշտ նշանակված ժամին սկսվեց Ժողովրդական կոմիսարների խորհրդի նիստը՝ Լենինի նախագահությամբ:

Լենինը սիրում էր ճշտապահություն:

Պատահել է նույնիսկ այսպիսի մի դեպք: Լենինը եկել է նիստի, իսկ այնտեղ համարյա ոչ ոք չի եղել: Լենինը քաշվել է մի անկյուն և սկսել թերթ կարդալ:

Վերջապես մարդիկ հավաքվել են: Նախագահն ասել է.

— Կարելի էր սկսել, բայց ընկեր Լենինը դեռ չկա...

Այդ ժամանակ լսվել է Լենինի ձայնը.

— Ես արդեն հասցրի երեք թերթ կարդալ: Ընկերնե՛ր, կարելի՞ է միթե այսպես անճշտապահ լինել:

Ժողովրդական կոմիսարների խորհրդի նիստերին Լենինը երբեք չէր ուշանում:

Ապրիլի 22-ին ժողովրդական կոմիսարները տարբեր հարցեր էին քննարկում:

Որոշում էին, թե ինչպես կարգավորել առևտուրը մյուս պետությունների հետ, ինչպես մոսկովյան գործարաններին ու ֆաբրիկաներին ավելի շատ էլեկտրականություն մատակարարել, ինչպես հայթայթել տորֆ:

Հենց այնտեղ էլ, միջանցքում՝ ո՛չ հեռու այն սենյակից, որտեղ Ժողովրդական կոմիսարների խորհուրդն իր նիստն էր անցկացնում, անդադար տկտկում էր հեռագրական ապարատը: Հեռագրեր էին գալիս աշխարհի տարբեր ծայրերից:

Տասնութ թվականի ապրիլյան օրերին հեռագրերն անհանգիստ լուրեր էին հաղորդում:

Անգլիացիները զորք էին դուրս բերել Մուրման-

---

*Սկիզբը՝ №№ 1, 2, 3*

**Ես**
**Լենինի մեջ**
**Փառաբանում եմ**
**աշխարհի հավատն ու**
**Իմ հավատը։**

*ՎԼԱԴԻՄԻՐ ՄԱՅԱԿՈՎՍԿԻ*

# ՄԵՐ ԱԼ ԴՐՈՇԸ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Ձմեռ էր, բուք էր,
Վոլգան սառած էր,
Երկինքը մութ էր,
Հողմահալած էր։
Մառախուղի մեջ
Նա մտորում էր,
Նա ձմեռվա դեմ
Ելնող գարուն էր։
Աշխարհը ցուրտ էր,
Մշուշապատ էր,
Դեմը ամրոց էր,
Պատնեշ ու պատ էր։
Բայց նա ջահել էր
Ու երազո՜ղ էր,

Բախտ երազողին
Նա ձեռք պարզող էր։
Նա քանդեր պիտի
Աշխարհում հինը,
Գրոհեր դեպի
Ձմեռայինը։
Հողմի դեմ ելած՝
Ո՞վ էր, այն ո՞վ էր,
Այնժամ դեռ անհայտ
Մի Ուլյանով էր,
Որ պիտի դառնար
Նոր կյանքի հիմնը,
Մեր ալ դրոշը,
Մեր մեծ Լենինը։

սկում, ճապոնացիները՝ Հեռավոր Արևելքում։ Գերմանացիները գրավել էին Ուկրաինան։

Ժողովրդական կոմիսարների խորհուրդն ապրիլի 22-ի գիշերվա ժամը 11-ին շտապ որոշում ընդունեց. ամեն գնով կասեցնել գերմանացիների առաջխաղացումը, թույլ չտալ նրանց անցնել երկաթուղային գիծը, որն ընկած էր Մոսկվայի և Ռոստովի միջև։

Ուրիշ շատ կարևոր որոշումներ էլ ընդունեց Ժողովրդական կոմիսարների խորհուրդն այդ օրը։

Նիստն ավարտվեց ուշ գիշերին միայն։

Այդպես անցավ Լենինի ծննդյան օրը—հեղափոխության հաղթանակից հետո՝ նրա առաջին ծննդյան օրը։

*Թարգմ. Ն. ԱՆԱՆՅԱՆԻ*

# ՍՊԻՏԱԿ ՀԱՑԸ



ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

Սեղմում էին, թաքուն և բաց,
Թշնամիները մեր բաղում։
Բյուր գործերով շրջապատված՝
Լենինը ելք էր մտածում։

Չէր վախենում դրսից եկող
Բազմալեզու բանակներից։
Թող գան լորդերը հաստակող,
Գեներալներն ապլորավիզ։

Հոկտեմբերը նրանց, անշուշտ,
Կտար հզոր հակահարված։
Միայն լիներ մի քիչ ապրուստ,
Մի բուռ սիսեռ, կտոր մի հաց։

Սովն էր, սակայն, երկրին տիրել,
Սովն էր սեղմում օղակը չար,
Այն թշնամին, որի հանդեպ
Մարդիկ չոքում են ուժասպառ։

Առատ հացի Ռուսաստանում
Սովն էր տիրում համատարած։
Իլյիչը ինքն էր ստանում
Լոկ մի կտոր ցամաք սև հաց։

Եվ ծամելով ցամաք սև հաց՝
Լենինը ելք էր որոնում,
Աղետներով շրջապատված,
Հաղթանակի հույսը հոգում,

Երբ ներս մտավ բանվորուհին՝
Դեմքին ժպիտ մի երկյուղած,
Դրեց նրա գրասեղանին
Երկու բոքոն սպիտակ հաց։

Նայեց Իլյիչը զարմացած.
— Օհո՜... այս ի՞նչ եք հնարել։
Մեզ որտեղի՞ց սպիտակ հաց։
Վաղուց է, որ ես չեմ տեսել։

Նա զգաց ներսում մի սուր ծակոց,
Հոգնած աչքերը շողացին,
Աղեգալարախորժակով
Նայում էր նա սպիտակ հացին։

Նայեց, նայեց ու լուռ ժպտաց
Եվ ինքն իրեն հաղթահարեց.
— Երկու բոքոն սպիտակ հա՞ց...
Այս որտեղի՞ց եք դուք ճարել։

— Դե, ճարել ենք, էլի՜,— ասաց
Բանվորուհին գողը սրտում,—
Քեզ համար է հատուկ թխված։
Ախար... դու շա՜տ ես աշխատում։

Խոսեց Լենինը զայրացած.
— Հանցանք է սա մեզ անվայել։
Մարդիկ այնտեղ չունեն սև հաց,
Դուք սպիտա՞կն եք ինձ բերել։

Աղջիկն ասաց.— Ընկե՛ր Լենին,
Ուրիշներից տարբեր ես դու։
Դու բեռ ունես քո ուսերին,
Դու ես մարդկանց առաջնորդում։

— Ինչպե՞ս մարդկանց կառաջնորդես,
Երբ կուշտ ես դու, նրանք՝ սոված։
Ես չեմ ուզում սպիտակ հաց։
Վերցրու և տար մանկապարտեզ։

Ասա, որ տան մանուկների՛ն...

Եվ ռուս ջահել բանվորուհին,
Արտասվելով առավ գնաց
Երկու բոքոն սպիտակ հաց։



Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

Moderato cantabile

mp

Քըն-քուշ թեր-թիկ-նե-րում մեր ծա-ղիկ-նե-րի.

mf

mp

զըն-գուն առ-վակ-նե-րի հա - յե-լու մեջ ջինջ՝

Նախ-շուն ա-չիկ - նե - րում ցող շա-ղիկ-նե-րի.

առ-վակ-նե-րի հա - յե- լու մեջ

f

*Dal segno senza repetizione poi la* Coda

քո ջերմ ժը - պի տը կա,

մեր ան - գին Ի - լ - յի՛չ։

Բո - լոր ման - կիկ - նե - րի

ման - կիկ - նե - րի

ա - չիկ նե - րում ջինջ՝

քո ջերմ ժը - պի - տը կա,

մեր ան-գին Ի - լ - յիչ։

ա - չիկ - նե - րում




Խոսք՝ ՎՐԵԺ ՎԱՐԴՈՒՆՈՒ

Երաժշտ. ԱՐԵԳ ԼՈՒՍԻՆՅԱՆԻ

Քնքուշ թերթիկներում
Մեր ծաղիկներր,
Նախշուն աչիկներում
Ցող շաղիկների,
Զնգուն առվակների
Հայելու մեջ ջինջ
Քո ջերմ ժպիտը կա,
Մեր անգի՛ն Իլյիչ:

Լուսե հեռուներում
Անմար գալիքի,
Երազկոտ աչքերում
Ամեն բալիկի,
Բոլոր մանկիկների
Աչիկներում ջինջ
Քո ջերմ ժպիտը կա,
Մեր անգի՛ն Իլյիչ:

ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ

# ԳԱՐՈՒՆ ԵԿԱՎ

Գարուն եկավ,
Գարուն եկավ,
Ջրերը ծափ են տալիս,
Հալվող ձյունի
Ճամփով երկար
Ծիծեռնակներն են գալիս:
Ետ են դառնում
Իրենց բույնը
Նրանք հեռու հարավից,
Անցած ձմռան տխրությունը
Ցած են թափել թևերից:
Գարուն եկավ,
Գարուն եկավ,
Ամպերն անձրև են անում,
Անձրևով են չոր ու ցամաք
Կածանները կանաչում:



Ջուր չտվին ամռանը,
Չդալարեց այս ծառը,
Մրգերն եղան դառն ու խակ,
Ցածում թոշնեց մի մեխակ:
Ծառ ու ծաղիկ միասին
Նախատեցին էն Սոսին,
Ասին.— Ամառն ո՞ւր էիր,
Մեծ ծովերին հյուր էիր,
Դու առանց ջուր թողիր մեզ,
Ա՛յ, պատժեցինք մենք էլ քեզ:



*Երբ որ ձմեռը մրսեց,*
*Ասաց՝ գարունը թող գա:*
*Երբ որ ամառը շոգեց,*
*Ասաց՝ աշունը թող գա:*
*Երբ որ աշունը դեղնեց,*
*Նրան ոչ ոք էլ չօգնեց:*



... Արդյոք ոտքի կանգնե՞լ է ավերված Հայաստանը՝ ի՞նչ դրության մեջ է...

Այս խոսքերը պատկանում են Վլադիմիր Իլյիչ Լենինին։ Մեծ առաջնորդը հիվանդ էր, երբ Ա. Մյասնիկյանը այցելեց նրան, և այդ հանդիպումը վերջինը եղավ։ Իր հիշողություններում Մյասնիկյանը գրում է, որ չնայած հիվանդությանը, Լենինը շատ հարցեր էր տալիս, հետաքրքրվում Հայաստանի վիճակով, ամբողջ հոգով





ցանկանում, որ հայ ժողովուրդը ապրի կանգնի, շենացնի իր տունը:

Մեծ առաջնորդի անսահման հոգատարության պատասխանը այս լուսանկարներն են տալիս: Անշուք տներով շրջապատված մի փոշոտ հրապարակ և նույն տեղում բարձրացած Լենինի հրապարակը. Թամանյան փողոցը հիսուն տարի առաջ և այսօր: Զույգ լուսանկար հին ու նոր Երևանից, որոնք վկայում են, որ իրականացել է Լենինի ցանկությունը:



ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԸ



## ՆԱՄԱԿԸ ՎԵՐԾԱՆՎԵՑ

Դա մի նամակ է, որ գրել է 12-ամյա Վոլոդյա Ուլյանովը իր ընկերոջը՝ Բորիս Ֆարմակովսկուն, ուղիղ 88 տարի առաջ։

Նամակը գրված է կեչու կեղևի վրա, այնպես ինչպես հեռավոր անցյալում հնդկացիներն էին գրում պապիրուսի վրա, ոչ թե տառերով, այլ՝ նկարներով, նախշերով, որոնք կոչվում էին տոտեմներ։

Վերջերս հաջողվեց վերծանել այդ նամակը։ Նրանում Վոլոդյան ընկերոջը կատակով պատմում էր, թե ինչպես են երեխաներով որսի գնացել։

Հնդկացիների նման յուրաքանչյուրը իր մականունն ուներ՝ Ինքնաեռ, Գորտ, Կտցար, Խեցգետին։ Որսը շարունակվում է մինչև երեկո, և քաջ նետաձիգները շատ են սովածանում։ Բայց ուղեկցողը հանկարծ որոշում է լողանալ։ Ընկերները խնդրում են արագ դուրս գալ ջրից, իսկ նա չի ուզում։ Այն ժամանակ որսորդները ասում են, որ եթե իրենց ղեկավարը ջրում մնա թեկուզ մեկ րոպե ևս, իրենք բոլորը սովամահ կլինեն։

«Տոտեմներով նամակը» լենինյան ֆոնդի № 1 փաստաթուղթն է։




# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԳԻՄՆԱԶԻՍՏՆԵՐԸ ԴԱՍ ՏՎԵՑԻՆ ՏՆՏԵՍՎԱՐԻՆ

*Սիմբիրսկի արական գիմնազիայում, որտեղ 1879—1889 թըվականներին սովորում էր Վոլոդյա Ուլյանովը, կար գիշերօթիկ բաժին:*

*Վոլոդյան հաճախ էր այցելում գիշերօթիկի իր ընկերներին, գրքեր էր բերում նրանց համար, զբոսնում էր նրանց հետ, շախմատ էր խաղում:*

*Մի անգամ տղաները նրան պատմեցին, որ շատ վատ են կերակրում իրենց, հնացած մթերքներ են տալիս: Փորձել են բողոքել, բան դուրս չի եկել:*

*Վոլոդյան նրանց խորհուրդ է տալիս միասին գործել:*

*— Հասկացեք,—ասում է նա,— երբ բողոքում է մեկը, նրա վրա ոչ ոք ուշադրություն չի դարձնում: Հարկավոր է բոլորով միասին վեր կենալ սեղանից և հրաժարվել ուտելուց, այդ անպայման կանհանգստացնի ագահ տընտեսվարին:*

*Ընկերները այդպես էլ անում են, հրաժարվում են ուտել հոտած կոտլետները: Աղմուկ է բարձրանում: Պետերը գազազում են, տղաներից մի քանիսին կարցեր նստեցնում, բայց և այնպես ստիպված են լինում տնտեսվարին հեռացնել, որից հետո երեխաներին կերակրում են ավելի լավ:*

*— Ահա՛, տեսնո՞ւմ ես, ինչ է նըշանակում ընդհանուր բողոք,— ասում է Վոլոդյան իր ընկերոջը,— միշտ պետք է գործել միասին: Պատերազմի դաշտում մենակ կռվողը՝ զինվոր չէ:*

# ԵՐԿՈՒ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ՀԱՆԴԻՊԵՑԻՆ

1893 թվականին Կազանի համալսարանի ուսանող Իսահակ Լալայանցը մարքսիստական խմբակներին մասնակցելու համար հեռացվեց համալսարանից և արտաքսվեց Սամարա:

Այդ ժամանակ Սամարայում էր բնակվում նաև Վլադիմիր Իլյիչի ընտանիքը:

1893 թվականի աշնանը, մի երեկո, Դոլգովի տանը Իսահակ Լալայանցը ծանոթացավ 23-ամյա Լենինին:

Ահա, թե ինչ է պատմում այդ հանդիպման մասին Ի. Լալայանցը:

...Ներս մտավ ոչ բարձրահասակ, բայց շատ ամրակազմ, հատկապես բեղերի ու մորուքի մեջ շիկակարմրին տվող խարտյաշ մազերով 22—23 տարեկան մի երիտասարդ: Իմ առջև կանգնած էր արտակարգ խելացի ու խորապես համակրելի դեմքով առինքնող, գրավիչ մի մարդ: Դա Վլադիմիր Իլյիչ Ուլյանովն էր:

Տանտերը մեզ միմյանց ներկայացրեց, առաջարկեց միայն ծանոթանալ: Մենք ձեռք տվեցինք իրար և, ինչպես դա հաճախ է լինում ծանոթանալիս, քթի տակ անհասկանալի փնթփնթացրինք մեր ազգանունները: Խոսակցությունը վերսկսվեց, որին մասնակցեց նաև նորեկը: Ավելի շատ տանտերն էր խոսում, մենք ռեպլիկաներ էինք տալիս և հաճախ իրար նայում: Զրույցը վերաբերվում էր քիչ հետաքրքիր, հանրածանոթ բաների:

Մի քիչ խոսելուց հետո, հրաժեշտ տվեցինք Դոլգովին ու միասին դուրս եկանք:

Ճանապարհին մեր միջև սկսվեց մի հետաքրքիր խոսակցություն, որը մեզ հնարավորություն տվեց ավելի մոտիկից ծանոթանալ իրար: Ես Կազանի կյանքից պատմեցի այն, ինչ կարող էի, և իմ հերթին մեծ հետաքրքրությամբ լսում էի այն ամենը, ինչ Վլադիմիր Իլյիչը մեր ծանոթության այդ առաջին երեկոյան կարողացավ ինձ հաղորդել Սամարայի մասին: Մեր զրույցը, բնականաբար, անցավ նարոդնիկներին ու մարքսիստներին վերաբերող հարցերին, և մենք երկուսս էլ այնքան տարվեցինք, որ չնկատեցինք, թե ինչպես հասանք նրա բնակարանին, և քանի որ դա զրույցի ամենահետաքրքիր տեղն էր, ապա Վլադիմիր Իլյիչը հայտնեց, որ ինձ «մի փոքր» ետ կուղեկցի: Աննկատելիորեն հասնելով իմ բնակարանին, ես էլ իմ հերթին առաջարկեցի նույն բանը... Եվ ահա այդպես, ամեն անգամ իրար «էլի մի քիչ» ուղեկցելով, մենք նորից չորս պտույտ գործեցինք: Վերջապես, որոշեցինք, որ միևնույնն է՝ ամբողջ նյութը մենք չենք սպառի, և ճանապարհի կեսին, ամուր սեղմելով իրար ձեռք, գնացինք մեր տները:

Ահա, թե ինչպես տեղի ունեցավ իմ առաջին ծա-



նոթությունը Վլադիմիր Իլյիչի հետ: Տուն վերադառնալով, ես երկար ժամանակ չէի ուզում պառկել քնելու, քայլում էի սենյակի մի անկյունից մյուսը, հոգումս զգալով ինչ-որ բերկրալի վերելք, ամենայն մանրամասնությամբ մտքումս կշռադատում էի նրա հետ ունեցած մեր խոսակցությունը: Իրոք որ նա այն ժամանակ ինձ վրա հիանալի տպավորություն թողեց: Այդ 23-ամյա մարդու մեջ ամենազարմանալի կերպով զուգակցվում էին մի կողմից՝ պարզությունը, նրբազգացությունը, կենսուրախությունն ու կրքոտությունը և մյուս կողմից՝ գիտելիքների խորությունը, տրամաբանական անողոք հետևողականությունը, դատողության և սահմանումների պարզորոշությունն ու հստակությունը:

## ՆՎԵՐԸ՝ ՆՎԵՐ ԷՐ ՈՒՂԱՐԿՈՒՄ

Սովետական հանրապետության առաջին տարիներին դժվար էր պարենային վիճակը, ուտելիք չկար, հացը չէր բավարարում: Հացառատ գյուղերից ու քաղաքներից հաճախ էին Լենինին մթերքների ծանրոց ուղարկում՝ նկատի ունենալով, որ առաջնորդը վատառողջ է, նրան լավ սնվել է պետք:

Իլյիչին սպասարկող խոհարարուհի Սանյա Սիսոևան միշտ զեկուցում էր Լենինին.

— Վլադիմիր Իլյիչ, նորից ծանրոց է ստացվել, ի՞նչ անել:

— Պետք է ընդունել, անպայման ընդունել,— պատասխանում էր Լենինը,— և անմիջապես ուղարկել մանկամսուր կամ մանկական հիվանդանոց: Չե՞ք մոռանա:

Եվ հաջորդ օրը, ըստ սովորության, հարցնում էր.

— Հը՞, Սանեչկա՛, ծանրոցն ուղարկեցի՞ք:

Մի անգամ Վոլգայի ձկնորսները Լենինին մի մեծ ձուկ ուղարկեցին: Սանյան ուրախացավ, սկսեց կտրատել ձուկը:

— Ի՜նչ լավ է,— մտածում էր նա,— մի քանի օր կբավարարի: Թե չէ կիսաքաղց է ապրում մեր Վլադիմիր Իլյիչը:

Հանկարծ խոհանոց մտավ Լենինը և նկատեց ձուկը:

— Հիանալի՜ ձուկ է,— բացականչեց նա,— որտեղի՞ց է:

Իսկ երբ իմացավ, որ ձկնորսներն են իրեն նվեր ուղարկել, խստորեն ասաց.

— Դուք մոռացել եք, երևի, իմ խնդրանքը՝ ոչ մի նվեր չընդունել. իսկ ձուկը իսկույն փաթաթեք և ուղարկեք մանկատուն:

— Վլադի՛միր Իլյիչ, դուք էլ պետք է ուտեք, այդքան շատ աշխատում եք, իսկ սնվում եք շատ վատ:

— Էլի՜ ինչ կասեք: Երեխաներն ամենուրեք քաղցած են, իսկ դուք մտածել եք օսետրինայով հյուրասիրել ինձ: Հե՛նց այսօր ուղարկեցեք երեխաներին:



## ՄԻ ԾԱՌ ՈՐՈՇԵՑ ԱՆՏԱՌԻ ԲԱԽՏԸ

Գորկայում, այն տան մոտ, որտեղ ապրում էր Լենինը, մի գեղեցիկ պուրակ կար՝ գեղեցիկ ծառուղիներով, փոքրիկ հրապարակներով:

Ծառուղիներից մեկի վերջում դեպի վեր էին սլանում երկու հսկայական եղևնիներ, որոնք իրենց բարձունքից կարծես իշխում էին շրջապատի վրա: Վլադիմիր Իլյիչին շատ էին դուր եկել այդ ծառերը, և նա հաճախ էր գալիս այգու այդ անկյունը՝ հիանալու հսկա գեղեցկուհիներով:

— Ա՛յ, սրանք ծառե՞ր են,— հիացմունքով ասում էր նա,— ուղղակի հրաշք են:

Մի ամառային երեկո, երբ Լենինը Գորկա էր եկել հանգստանալու, դուրս եկավ այգի՝ զբոսանքի: Խաղաղ էր, անաղմուկ: Իր սիրած ծառուղու նստարանին նստած՝ նա ամբողջ կրծքով շնչում էր եղևնիների բույրով հագեցած մաքուր օդը և ունկնդրում հնամենի այգու լռությունը: Նրա ուշադրությունը մի պահ լարվեց, սևեռեց հայացքը դեպի ծառուղու խորքը: Այս ի՜նչ փոփոխություն էր: Ծառուղին ամփոփող եղևնիներից մեկը անհետացել էր: Ընդամենը մի քանի օր առաջ, երբ Իլյիչը այստեղ էր, ծառը կար:

Այս ի՞նչ վայրենություն է, ո՞վ է արել այդ: Պետք է պարզել, թե ում ձեռքի գործն է:

Իլյիչը խորապես հուզված էր, վրդովված, ինչպե՞ս է կարողացել մարդ արարածը ձեռք բարձրացնել այդպիսի գեղեցկության վրա:

Դրանից հետո էր, որ Վլադիմիր Իլյիչի առաջարկությամբ հրապարակվեց դեկրետ՝ Մոսկվա քաղաքի շուրջը 30 կմ շառավիղով քաղաքամերձ անտառների վրա խստագույն հսկողություն սահմանելու մասին:

## «ՈՎՔԵ՞Ր ԵՆ ԱՅՍ ՍԵՎՈՒԿ ԵՐԵԽԱՆԵՐԸ»



Մոսկվայի Լազարյան ճեմարանը հանդիսանում էր հայ կուլտուրայի ամենահին օջախը Ռուսաստանում և տվել էր բազմաթիվ հայ առաջադեմ գործիչներ: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո որոշվեց այն դարձնել հայկական ինստիտուտ և աշխատանքային դպրոց:

1919 թվականի մարտի 4-ին ժողկոմսովետը Վ. Ի. Լենինի ստորագրությամբ ընդունում է Հայկական ինստիտուտի մասին դեկրետը:

Դպրոցը սովորողներին ապահովում էր օրապահիկով, հանրակացարանով, դասագրքերով, գրենական պիտույքներով և հագուստով, այնտեղ մեծ մասամբ ընդգրկված էին անօթևան որբ երեխաները:

Ինստիտուտի և աշխատանքային դպրոցի կազմակերպման հարցերով զբաղվում էին Վահան Տերյանը, Պողոս Մակինցյանը, անվանի գիտնականներ Հովսեփ Օրբելին, Մառը և ուրիշներ:

Առաջին հայկական ինստիտուտի և աշխատանքային դպրոցի դաստիարակչուհի Օլգա Հովհաննիսյանը պատմում է. «Մի անգամ երեկոյան սաների մոտ եկավ Վահան Տերյանը: Երեխաները քնած էին: Տերյանը նայեց նրանց փաղաքշող հայացքով: Հետո երկար, նիհար մատներով տկտկացնելով մահճակալի կողին, մտածում էր և, մի րոպե հետո, կարծես ինչ-որ բան հիշելով, անսպասելի ասաց.

— Գիտե՞ք ինչպես է ժպտում...

— Ո՞վ,— չհասկանալով հարցրի ես:

— Իլյի՛չը... Նա արտասովոր ժպիտ ունի...»

Իլյիչի ժպի՛տը... Այդ ժպիտը տեսել են որբացած հայ մանուկները: 1919 թվականի մայիսի 1-ի առավոտյան Օլգա Հովհաննիսյանը աշխատանքային դպրոցի աշակերտներին տանում է Կարմիր հրապարակ՝ տոնահանդեսի և տեսնելու Լենինին...

«...Մեր կողքին կանգ առավ մի հին ավտոմեքենա, որից դուրս եկավ կեպի դրած, ոչ բարձրահասակ մի մարդ: Նա ժպտաց:

— Ովքե՞ր են այս սևուկ երեխաները,— հարցրեց նա ինձ: Իսկ ես կանգնել ու նայում էի, թե ինչպես է այդ մարդը ժպտում:

— Օ՛լգա, ախար դա Լենի՛նն է,— ասացին ընկերներս:

Հուզմունքից ես շփոթվեցի:

— Սրանք հայ երեխաներ են, ընկե՛ր Լենին,— հազիվ պատասխանեցի ես:

Վլադիմիր Իլյիչ Լենինը քնքշությամբ շոյեց մեկի գլուխը և գնաց ամբիոնի կողմը...»

Ո՞վ էր այդ երջանիկը: Ապրո՞ւմ է նա արևի տակ:

# ԲՆՈՒԹՅԱՆՆ ՈՒ ԺՈՂՈՎՐԴԻՆ ՄՈՏԻԿ

Վլադիմիր Իլյիչը հանգստի լավագույն ձևը համարում էր կիրակի օրերը քաղաքից դուրս զբոսանքի կամ որսի գնալը:

— Հը՞, ընկե՛ր Գիլ, վաղն ի՞նչ ենք անելու— դիմում էր Վլադիմիր Իլյիչը իր վարորդին շաբաթ օրերը:— Ահա, օրինակ, Ռուբլևո... չգիտե՞ք, Գի՛լ, թե ինչ տեղ է:

— Առաջին անգամ եմ լսում, Վլադի՛միր Իլյիչ...

— Չգիտե՞ք: Ավելի լավ: Գնանք իմանանք:

Եվ նրանք մեկնում էին 50—60 կիլոմետր Մոսկվայից հեռու:

Նա գերազանց որսորդ էր և հասկանում էր որսորդական արվեստի բոլոր նրբությունները: Վլադիմիր Իլյիչը սիրում էր հենց որսորդության պրոցեսը, երկար քայլել, անտառը, մաքուր օդը: Որսը նրա համար ո՛չ թե նպատակ էր, այլ՝ հետևանք:

Հաճախ էր նա պատվիրում կիրակնօրյա որսը տալ ծանոթներից, աշխատանքային ընկերներից մեկնումեկին:

— Աննկատ արեք այդ,— պատվիրում էր նա, — ծեծեցեք դուռը, բաց կանեն, և դուք ոչ մի խոսք չասած՝ թռչունը դրեք նախասենյակում և փսկույն հեռացեք:

Սովորաբար մեկնում էինք շաբաթ երեկոյան և վերադառնում երկուշաբթի առավոտյան...

Վլադիմիր Իլյիչը գերադասում էր գիշերել աղքատ գյուղացիների մոտ, մտերիմ զրույցի էր բռնվում նրանց հետ, ընթրում և ապա դիմում տանտիրուհուն.

— Իսկ հիմա քնենք: Առավոտյան վաղ ենք վեր կենալու և, հայդա՛, անտառ: Խնդրում եմ, տարեք մեզ խոտանոց:

Վլադիմիր Իլյիչը ուղևորությունների ժամանակ գիշերելու համար խոտանոցից բացի ոչինչ չէր ընդունում...

— Խնդրում եմ, ոչինչ մի՛ արեք: Ահա այսպես, ուղղակի խոտի վրա էլ կքնենք: Տակներս ոչինչ չենք գցի: Տպավորությունը կկոր-



չի, հաճույքն էլ այն չի լինի...— պառկում էր խոտի վրա, ծածկըվում վերարկուով և հանգիստ քնում:

Վերադարձին ուղևորության մասին իր տպավորություններն էր պատմում, դիպուկ կերպով բնութագրում մեր ուղեկիցներին, ուրախ կատակում:

Դժվար էր հավատալ, որ կանցնի մեկ-երկու ժամ և այդ կիսավերարկուով հասարակ մարդը կնախագահի նիստը, որտեղ վճռվում են կարևորագույն պետական գործեր:



## ՇԱՀՈՒՄՅԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐԻ ՆՎԵՐԸ

Բաքու, 1917 թիվ:

Կառամատույցը լեփ-լեցուն էր մարդկանցով: Ուղևորները բարձրանում էին վագոնները: Շահումյանը կանգնած էր՝ ընկերներով ու հարազատներով շրջապատված: Նա մեկնում էր Պետրոգրադ՝ մասնակցելու սովետների Համառուսաստանյան առաջին համագումարին: Հորն ուղեկցելու էին եկել Շահումյանի որդիները՝ Սուրենը, Լևոնը, փոքրիկ Սերոժան: Նրանց աչքերում թաքուն մի ուրախություն կար: Գաղտնիք ունեին նրանք:

— Հայրի՛կ,— հորը մոտեցավ ու ցածրաձայն շշնջաց Լևոնը,— մեր կողմից այս փոքրիկ կրծքանշանը հանձնիր Լենինին:

— Լենինի՞ն:

— Այո՛,— շշուկով ավելացրեց Սուրենը:

Շահումյանը համբուրեց նրանց, ընդունեց նվերն ու խնամքով թաքցրեց գրպանում: Լսվեց գնացքի մեկնման սուլոցը:

— Սերյոժային լա՛վ նայեցեք,— հնչեց Շահումյանի ձայնը, և գնացքը շարժվեց:

Կառամատույցը կամաց-կամաց դատարկվում էր, իսկ նրանք դեռ կանգնած էին: Հեռվից երևում էր գնացքից բարձրացող ծուխը միայն:

Պետրոգրադ:

Համագումարի լարված աշխատանքից հետո Իլյիչը երբեմն Կրուպսկայայի հետ դուրս էր գալիս Պետրոգրադի ուղղությամբ՝ խաղաղ փողոցներում շրջագայելու: Այդ օրը նրանց հետ էին Շահումյանը և Ենուկիձեն: Նրանք չորսով քայլում էին ու խոսում: Հանկարծ Շահումյանը հիշեց որդիների պատվերը: Հանեց գրպանից փոքրիկ փաթեթը, բացեց և մեկնեց Իլյիչին.

— Վլադի՛միր Իլյիչ, իմ որդիներն են ուղարկել, խնդրեմ, վերցրե՛ք:

Իլյիչը վերցրեց Կարլ Մարքսի նկարով կարմիր կրծքանշանը, ժպտաց, շնորհակալություն հայտնեց: Լենինը նայում էր Շահումյանին ու մտովի պատկերացնում նրա գեղեցկադեմ որդիներին: Նա նորից նայեց կրծքանշանին, կրկին շնորհակալություն հայտնեց:

Իլյիչը հուզված էր: Չէ՞ որ նա երեխաներին շատ էր սիրում:

Շահումյանը դեռ Պետրոգրադում էր և ահա Լևոնից ստացավ մի նամակ:

Լևոնը գրում էր.

«Սիրելի հայրիկ.

Ինչպե՞ս ես: Ամսի քանիսի՞ն ես հասել Պիտեր: Հանձնե՞լ ես արդյոք ընկեր Լենինին «Կարլ Մարքսը» և հաղորդե՞լ ես ողջույններ ինձնից: Եթե ո՛չ, ապա հանձնի՛ր: Այդտեղից ինձ համար բեր պատահած բրոշյուրները և երգերի ժողովածուներ, եթե որևէ տեղ տեսնես....

Այսօր իմ աղունիկը երկու ճուտիկ հանեց:

Համբուրում եմ՝ Լյովա»:

## «ԱՄԵՆԻՑ ՇԱՏ ՄԵԶ ՀԵՏԱՔՐՔՐՈՒՄ Է ՁԵՐ ԱՌՈՂՋՈՒԹՅՈՒՆԸ»

Ահա մի նամակ, որ գրվել է 1923 թ. նոյեմբերին, երբ Լենինը ծանր հիվանդ էր: Նամակի հեղինակները էին մեր մայրաքաղաքի՝ Երևանի Լենինի անունը կրող օղակի պիոներները:

«Թանկագին ուսուցիչ ընկ. Լենին, ուղարկում ենք այս երկտողը Ձեզ, նպատակ ունենալով նախ՝ Ձեզ հետ հաստատել նամակագրական կապ և տեղեկանալ Ձեր առողջության մասին: Ամենից շատ մեզ հետաքրքրում է Ձեր առողջությունը, որը մեզ համար հրատապ խնդիր է դարձել և որի մասին րոպե առ րոպե սպասում ենք, այսինքն՝ Ձեր վերջնական առողջությանը:



Դուք վստահ հավատացած եղեք մնացյալ հեղափոխական բոլոր գործերի համար: Մենք ձեզ համարում ենք մեր ամենաառաջնակարգ ուսուցիչը և մեր ամեն մի արած քայլը գծում ենք այն ուղիով, որով

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

# Պատմում են փաստաթղթերը

Դուք ընթացել եք, հերոսաբար մարտնչելով ամեն արգելքի դեմ: Ու մեր արած քայլերը օրըստօրե ավելի տոկուն ու վստահ ենք կատարում, կանգ չառնելով ոչ մի խոչընդոտի առաջ:

Վստահ հավատացած եղեք նաև այն բանի համար, որ մենք մեր ժրաջան, անդուլ աշխատանքով կկենսագործենք այն բոլոր վեհ ու պանծալի ձգտումներն ու պարտականությունները, որ դրված են մեզ վրա:

Վերջացնելով մեր փոքրիկ նամակը, ցանկանում ենք Ձեզ շուտափույթ առողջություն և երջանիկ օրեր գալիք համաշխարհային հեղափոխությունը իրագործված տեսնելու և ղեկավարելու համար:

Սպասում ենք Ձեր նամակին:

Թանկագին բարևներով՝ Ձեր փոքրիկ և գիտակից ընկերներ»:

Մայրաքաղաքի այս օղակին Լենինի անունը շնորհվել էր պիոներների Համահայաստանյան առաջին համագումարում՝ նրա օրինակելի աշխատանքների համար:

ԳՈՀԱՐ ՄԱՆՈՒԿՅԱՆ
ՀԱՍՄԻԿ ԿԱՐԱԽԱՆՅԱՆ



Ամպամած երկինք, որ լուսանկարում սպիտակ, իսկ ավելի ճիշտ՝ անգույն է դարձել, տերևաթափ բարդիներ և հենց նոր կայարան ժամանած գնացքի երկար շարժակազմ: Լուսանկարն այնքան էլ հաջող չէ, կարմիրբանակայինների դեմքերը հազիվ են երևում, բայց մեզ համար, որ գիտենք՝ լուսանկարը կատարված է 50 տարի առաջ, դժվար չէ մտովի փոխադրվել տասնամյակների խորքը և երևակայության ուժով վերապրել 1920 թ. դեկտեմբերյան Հայաստանի պատկերը... Սովետական կարգերի հաստատման առաջին բերկրանքն ապրող ժողովուրդ, մեծ վերափոխումների շեմին կանգնած մի երկիր, որը դեռևս ծանր վիճակում է, կանգնած է մեծ դժվարությունների առաջ, կարիք ունի օգնության:

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում սովետական կարգեր հաստատվեցին: Դեկտեմբերի 13-ին Վ. Ի. Լենինը ընդունեց Հայաստանի հեղկոմի անդամներ Սահակ Տեր-Գաբրիելյանին և Ասքանազ Մռավյանին, զրուցեց նրանց հետ, ծանոթացավ Հայաստանի դրությանը: Եվ նույն օրը Ժողովրդական կոմիսարների սովետը որոշում ընդունեց որպես առաջին օգնություն Հայաստանին բաց թողնել 3 միլիարդ ռուբլի:

Ահա այն գնացքը, որով ոսկին փոխադրվել է Երևան, ավելի ճիշտ՝ սա այն պահըն է, երբ գնացքը կանգնել է կայարանում: Անհայտ լուսանկարիչը կարողացել է որսալ թանկագին վայրկյանը, իրադարձություններով հարուստ նորաստեղծ Սովետական Հայաստանի կյանքի հիշարժան պահերից մեկը:



# ԵՍ ՀՊԱՐՏԱՆՈՒՄ ԵՄ ԻՄ ԵՐԵԽԱՆԵՐՈՎ

Տուն-թանգարանի փոքրիկ սենյակի պատից մայրական ջուլալ, բարի հայացքով նայում է նա բոլորին ու մեղմ ժպտում: Ու թեև այցելուները անմիջապես ճանաչում են նրան, բայց էքսկուրսավարուհին չի մոռանում հիշեցնել.

— Մարիա Ալեքսանդրովնա Ուլյանովան է, Վլադիմիր Իլյիչի մայրը:

Դեպի բակ նայող լուսամուտի գոգին ծաղկամաններ են՝ բուրավետ ծաղիկներով: Երկաթյա մահճակալի ճերմակ ծածկոցի վրա ասես մնացել են նրա մատնահետքերը: Անկյունում դրված պահարանի նախշազարդ դռնակները ծածկված են ձեռագործերով, իսկ սեղանի վրա գրքեր են: Կարդում եմ ապակու տակ ցուցադրված վկայականը, որ տրված է նրան Սամարայի ուսումնարանների դիրեկցիայի կողմից. «Սույնը ներկայացնող Մարիա Բլանկը իրավունք ունի տարրական դպրոցում դասավանդելու ռուսերեն, ֆրանսերեն, գերմաներեն...»

— Մարիա Ալեքսանդրովնան ծնվել է 1835 թվականին, Պետերբուրգում, բժշկի ընտանիքում,— շարունակում է տուն-թանգարանի էքսկուրսավարուհին,— նա հատուկ դպրոց չի հաճախել և տնային պայմաններում համառ աշխատանքով տիրապետել է մի քանի լեզուների, էքստեռն քննություններ է հանձնել և ստացել տարրական դասարանների ուսուցչուհու կոչում:

Հենց նույն պահին բոլորս զարմանքով շուռ ենք գալիս: Սենյակ է մտնում մի կին: Ա՞յ քեզ բան. ո՞ւմ է հիշեցնում այս ծանոթ դեմքը, այս աչքերը, այս բարի, մայրական ժպիտը: Անծանոթ կինն ուղղում է մահճակալի ծածկոցը, խանդաղատանքով մոտենում է լուսամուտին, հոտ քաշում ծաղիկներից: Հետո դիտում է լուսամուտից բացվող տեսարանը:

Մի խումբ փոքրիկներ հենց այդ պահին մտնում էին Մարիա Ալեքսանդրովնայի սենյակը: Նրանք հարգանքով ետ քաշվեցին, իսկ մի փոքրիկ ողջունեց.

— Բարև՛ ձեզ, Մարի՛ա Ալեքսանդրովնա...

Հանկարծ անծանոթ կնոջ աչքերը պայծառացան: Նա հուզմունքով գրկեց փոքրիկին, սեղմեց կրծքին.

— Քո բարևն ամենամեծ պարգևն էր ինձ համար, սիրելի՛ս...

Գաղտնիքը բացեց էքսկուրսավարուհին.

— Ճանաչեցի՞ք, ՌՍՖՍՀ ժողովրդական դերասանուհի Ելենա Ֆադեևան է: Իլյիչի մայրիկին նվիրված «Մոր սիրտը» կինոնկարում նա կատարում է Մարիա Ալեքսանդրովնայի դերը: Կյանքում էլ, տեսնո՞ւմ եք, շատ նման է նրան: Հաճախ է Ուլյանովսկ գալիս ու չի մոռանում մտնել տունթանգարան...

Մարիա Ալեքսանդրովնայի դերակատարման համար հանրաճանաչ դերասանուհին արժանացել է պետական մրցանակի, բայց փոքրիկների ողջույնը որքա՞ն հրճվանք պատճառեց նրան: Ուրեմն իրեն հաջողվել է այնպես խաղալ Իլյիչի մայրիկի դերը, որ



նույնիսկ փոքրիկները, առանց գրիմի ճանաչեցին... Երեխաներն իրենց ձեռքի ծաղիկները մեկնեցին դերասանուհուն...

Այնտեղ՝ բակում, փոքրիկ այգում հիմա էլ բուրում են Մարիա Ալեքսանդրովնայի սիրած ծաղիկներն ու թփերը։ Ինքն էր խնամում, հոգ տանում, որ չթառամեն։

— Մենք ամեն ինչում օգնում էինք մայրիկին,— իր հուշերում պատմում է Աննա Իլյինիչնան,— իսկ նա՝ մեր թանկագին մայրիկը, մեր ուսուցիչն ու դաստիարակը, մեզ համար հորինում էր հազար ու մի չարաճճի խաղեր, տնային անհամար հոգսերից հետո ժամանակ էր գտնում օգնելու մեզ՝ պատրաստելու դասերը, ուսումնասիրելու օտար լեզուները։ Նա մեզ համար մեծ հեղինակություն էր...

Հետագայում էլ Նադեժդա Կրուպսկայան է նշում.

— Կազմակերպչի տաղանդը, որով օժտված էր Իլյիչը, ինչ-որ չափով նա ժառանգել էր մորից։

Ինքը՝ Վլադիմիր Իլյիչը, մայրիկի հետ կապված էր հոգու բոլոր թելերով։ Վոլոդյայի օրորոցի մոտ մայրիկը հաճախ է երգել.

*Գուցե քեզ, իմ սիրելի՛ փոքրիկ,*
*Սպասում են դժվար օրեր ու*
*կարիք,*
*Քնի՛ր, մանկի՛կս, ու՛ժ հավաքի՛ր,*
*Արդար կյանքի համար*
*պայքարի՛ր...*

«Իմ սիրելի մայրիկ,— հետագայում հեռու-հեռուներից գրել է Իլյիչը,— ես չեմ մոռացել քո երգերը, ես չեմ մոռացել մեր անկրկնելի երեկոները, երբ դու նստում էիր դաշնամուրի առաջ և ես մի ավելորդ անգամ խնդրում էի.

— Սկսի՛ր, մայրի՛կս, «Պոլկա» ենք պարում...»

Ամեն երեկո նրանք հավաքվում էին հյուրասենյակում, սեղանի շուրջը։ Ընթրիքից հետո մայրիկը նստում էր դաշնամուրի առաջ։ Հայրիկը՝ Իլյա Նիկոլաևիչը, Սիմբիրսկի նահանգի գիմնազիաների դիրեկտորը, մանկանում էր ու թռչկոտում Աննայի հետ, Ալեքսանդրը՝ Մարիայի հետ, ամենափոքրիկ որդին՝ Դմիտրին Օլյայի թևն էր քաշում։

— Իսկ ես մայրիկի՞ս բաժինն եմ,— հրճվանքով կանչում էր Վոլոդյան, և Մարիա Ալեքսանդրովնան թողնում էր դաշնամուրը, բռնում սիրելի որդյակի ձեռքերից ու, հո՜պ, ինչպե՜ս էին պարում...

Իլյա Նիկոլաևիչը վաղ հեռացավ կյանքից։ Այդ ժամանակ Վոլոդյան գիմնազիայի նախավերջին դասարանում էր. Ընտանիքի և փոքրիկների դաստիարակության ամբողջ հոգսն ընկավ մայրիկի վրա։ Ամուր կամքի և հոգեկան մեծ կարողությունների տեր կինը չընկճվեց։ Վլադիմիր Իլյիչը դարձավ մայրիկի առաջին օգնականը տնային գործերում։ Միաժամանակ նա շարունակում էր առաջվա պես գերազանց սովորել... Այդ ժամանակ Ալեքսանդրը ուսանում էր Պետերբուրգի համալսարանում։ Երեխաները Մարիա Ալեքսանդրովնայի համար ուրախության և պայծառ հույսերի անսպառ աղբյուր էին։

— Մայրիկը մեզ համար լավի ու գեղեցիկի օրինակ էր,— մի հանդիպման ժամանակ ասել է Դմիտրի Իլյիչը, —բայց մենք որքա՜ն տագնապ պատճառեցինք նրան։

Մարիա Ալեքսանդրովնան հավատում էր, որ իր երեխաները օգտակար մարդիկ կդառնան հասարակության, ժողովրդի համար։ Երբ նա իմացավ, որ ավագ որդին՝ Ալեքսանդրը բանտարկվել է ցարի դեմ կատարված մահափորձին մասնակցելու համար, անմիջապես շտապեց Պետերբուրգ։ Մեծ դժվարությունների գնով նրան հաջողվեց տեսակցել որդու հետ։ Սկզբում մայրական զգացումները հաղթում են և նա խնդրում է Ալեքսանդրին ներման դիմում գրել։ Ալեքսանդրը պատասխանում է.

— Մայրի՛կ, ես չեմ կարող այդ քայլը կատարել... Ընտանիքի հանդեպ ունեցած պարտքից բացի, ես պարտք ունեմ նաև հայրենիքին։

Մայրական սիրտը լցվում է ցավով, միաժամանակ և մեծ հպարտությամբ։



— Պինդ կաց, տղա՛ս,— մաղթում է նա բաժանվելիս։

Զարմանալի արիությամբ ընդունեց նա որդու մահապատժի լուրը։ Եվ սկսվեց այդ զարմանալի կնոջ կյանքի ամենատագնապալի շրջանը։ Հեղափոխական պայքարի ճանապարհը բռնեց մյուս որդին՝ Վլադիմիր Իլյիչը...

Արխիվում պահպանվել է Մարիա Ալեքսանդրովնայի անձնագիրը, որ տրվել է նրան 1896 թվականին: Նրա մեջ կարելի է տեսնել ավելի քան 40 գրանցում՝ տարբեր վայրերի, մի տեղից մյուսն է նա թափառել՝ միշտ մնալով իր երեխաների հետ և միշտ՝ երեխաների համար:

1897 թվականին Վլադիմիր Իլյիչն առաջին անգամ աքսորվեց հեռավոր Շուշենսկոյե գյուղը: Մարիա Ալեքսանդրովնային հաջողվեց հանդիպել Պետերբուրգի ոստիկանապետին: Վերջինս հեգնանքով դիմեց նրան.

— Կարող եք հպարտանալ ձեր որդիներով. մեկին կախեցին, մյուսին նույնպես կախաղանն է սպասում:

Մարիա Ալեքսանդրովնան այլևս խնդրանքով չդիմեց նրան և ասաց.

— Այո՛, ես հպարտանում եմ իմ երեխաներով:

Այդ հպարտության զգացումով են տոգորված մոր նամակները՝ ուղղված Վլադիմիր Իլյիչին: Իսկ ինչպիսի՜ ջերմությամբ են շնչում Իլյիչի նամակները: Հեռուհեռուներից միշտ էլ նա անհանգիստ ապրումներ է ունեցել մոր հանդեպ: Իլյիչի նամակները սովորաբար սկսվում են անչափ մտերմական բառերով. «Իմ թանկագին»: «Հարազատս, ինչպե՞ս ես քեզ զգում»: «Ինչպե՜ս եմ ցանկանում համբուրել քո աչիկները, մայրի՜կս...»

Մարիա Ալեքսանդրովնան չտեսավ իր որդու գործի վերջնական հաղթանակը: Նա չապրեց մինչև Հոկտեմբերյան օրերը: 1916 թըվականին հարազատները նրան ուղեկցեցին վերջին հանգրվանը՝ Վոլկովյան գերեզմանատուն: Պատմում են, որ 1917 թվականի ապրիլին, երբ Վլադիմիր Իլյիչը գաղտնի Ռուսաստան եկավ, հենց հաջորդ օրը ծաղիկներ տարավ մայրիկի շիրմաքարին: Հիմա էլ, ձմեռ թե ամառ, այդ շիրմաքարին ծաղիկներ կան...

ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
(Ուլյանովսկ)

Նկ. ՀԱԿՈԲ ՍՈՒՔԻԱՍՅԱՆԻ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ԵՐԿԱՐԱԿԵՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Սովետական Միության կոմկուսի Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվում գտնվում են Վլադիմիր Իլյիչ Լենինի ձեռագրերը, նամակները, գրությունները, փաստաթղթերը, ինչպես նաև կինոժապավեններ, լուսանըկարներ ու ձայնագրություններ, որոնց երկարատև պահպանության համար չափազանց բարդ աշխատանք են կատարում ինստիտուտի գիտաշխատողները:

Կուսակցական արխիվը հաճախ ստանում է լենինյան այնպիսի փաստաթղթեր, որոնք ժամանակի ընթացքում ճմրթվել են, մաշվել, գունաթափվել են կամ այնպիսի վիճակում են, որ բավական է մի փոքըր հպում, և կփշրվեն... «Բուժման» համար անհրաժեշտ է ոչ միայն տիրապետել վերականգնման արվեստի գաղտնիքներին, այլև գիտենալ թղթի ծերացման պատճառները, ծանոթ լինել գունատված տեքստերի վերականգնման քիմիական ու ֆիզիկական նորագույն մեթոդներին:

Մենք կպատմենք լենինյան երկու փաստաթղթի վերականգնման աշխատանքի մասին: Փաստաթղթերից առաջինը 1919 թվականի փետըրվարի 20-ին ժողովրդական կոմիսարների խորհրդի կողմից ընկեր Գրիշինին տրված վկայականն է, որի վրա գտնվում է Վ. Ի. Լենինի ստորագրությունը:

Վկայականը ժամանակի ընթացքում դեղնել էր ու մաշվել, ծածկըվել էր բազմաթիվ բծերով: Լենինի ստորագրության կարմիր թանաքը մասամբ գունաթափվել էր: Ինչ-որ մեկի հոգատար ձեռքը պատառոտված վկայականը սոսնձել էր գրասենյակային սովորական սոսնձով:

Ահավասիկ, այդ մանդատը գտնվում է վերականգնողի սեղանին: Վկայականը մանրամասն քննության են ենթարկում, ստուգում են տեխնիկական վիճակը, որոշում են վնասվածքների աստիճանը, մի խոսքով, ենթարկում են ընդհանուր «ախտորոշման»:

Հետո կաթիլային քիմիական միկրոանալիզ կատարելով, ճշտում են թղթի և թանաքի որակն ու բաղադրությունը:

Հիմա արդեն կարելի է մաքրել թուղթն ու քիմիական սովորական միջոցներով վերականգնել անհետացած տեքստը: Այդպես վարվում են քրեագետները: Բայց քրեագիտական ուսումնասիրության ժամանակ բնագրի երկարատև պահպանում չի պահանջվում: Իսկ արխիվներում, որտեղ գտնվում են պատմական արժեքներ ունեցող փաստաթղթեր, վերականգնումից հետո անհրաժեշտ է նաև ապահովել բնագրի երկարակեցությունը:

Ընկեր Գրիշինի վկայականի վերականգնման աշխատանքները կատարելիս հարկ եղավ ամենից առաջ զգուշորեն հեռացնել այն թըղթի կտորները, որոնք ալկալիական գրասենյակային սոսնձով սոսնձված էին պատռվածքների վրա: Վերականգնողը միլիմետր առ միլիմետր մանդատը սուր նշտարով մաքրում էր չորացած սոսնձից: Հետո թըղթին ներծծված ալկալիական սոսինձը չեզոքացվեց օրգանական թըթվուտներով: Պարզվեց, որ փաստաթղթի տեքստը խոնավակայուն չէ, ուստի այն ամրացրին բենզոլի մեջ լուծված էթիլցելյուլոզայով:

Այս ամենը վերականգնման աշխատանքների առաջին փուլն էր միայն: Անհրաժեշտ էր թղթին տալ նախկին մեխանիկական ամրու-

թյունն ու ճկունությունը: Այդ նպատակով թղթին ներծծում են հատուկ մի լուծույթ, որի բաղադրիչներն են բարձրորակ ժելատինը, գլիցերինը և ֆորմալինը կամ պենտաքլորֆենոլյատը: Ժելատինը ամրացնող հատկություն ունի, գլիցերինը թղթին տալիս է նախկին ճկունությունը, իսկ ֆորմալինը կամ պենտաքլորֆենոլյատը թուղթը պաշտպանում է բորբոսային սպորներից:

Վերականգնման աշխատանքն ավարտվում է, երբ հմուտ վերականգնողները լրացնում են տեքստի պակաս մասերը, կարկատում են մաշված եզրերը կամ պատռվածքները, որից հետո փաստաթուղթը ստանում է իր նախկին տեսքը:

Երկրորդ փաստաթուղթը լուսանկար է, որի վրա պատկերված է Վ. Ի. Լենինը այն պահին, երբ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության տարեդարձի օրը, 1918 թվականի նոյեմբերի 7-ին, Կրեմլի պատի մոտ դրված ամբիոնից ելույթ էր ունենում:

Այդ լուսանկարը արխիվին է հանձնել մասնագիտությամբ գյուղատնտես Ալեքսանդր Սուետենկոն, որը անձամբ մասնակցելով տոնակատարությանը, լուսանկարել էր Վ. Ի. Լենինին: Սակայն այդ լուսանկարն ու նեգատիվը ժամանակին վատ մշակելու հետևանքով, ունեին որոշ արատներ:

Անհրաժեշտ էր վերականգնել այդ հազվագյուտ փաստաթուղթը:

Նախ նեգատիվները մաքրեցին բենզոլով թրջված թավիշով, մշակեցին զանազան քիմիական նյութերով, լվացին թորած ջրով, որից հետո նեգատիվները իրենց որակով դարձան անճանաչելի: Կրկնօրինակներ պատրաստելուց հետո, այդ փաստաթղթերը հանձնվեցին հավերժական պահպանության:

Մեր օրերում քիմիկոսները մշակել են բազմաթիվ նոր արհեստական նյութեր, որոնք մեծ հեռանկարներ են բացում վերականգնման աշխատանքների համար: Փաստաթղթերի, գրքերի և այլ արժեքավոր նյութերի համար հիմա օգտագործում են բիոլոգիական կայուն սոսինձներ: Գրաֆիտային տեքստերը կայունացնելու համար վերականգնողների տրամադրության տակ գտնվում են մեթիլցելյուլոզի թույլ լուծույթներ, կարբօքսիմեթիլցելյուլոզի նատրիումական աղեր, մեթիլպոլիամիդային սոսինձներ:

Քիմիայի օգնությամբ վերականգնվում և պահպանվում են համաշխարհային մշակույթի գանձերը, և ամենից առաջ՝ լենինյան փաստաթղթերը:

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

«Մանկական օր» վերնագրով, 1874 թվին, Վարշավայում լույս տեսավ ոտանավորների մի գրքույկ՝ գեղեցիկ նկարազարդված: Այնտեղ պատմվում էր փոքրիկ Նադյայի մասին, թե ինչպես Նադյան իր իրերի վրայից մաքրում է փոշին, տիկնիկի համար զգեստ է կարում, ինչպես է կերակրում հավի ճուտիկներին, ինչպես է գրել սովորում և այլն...

Այդ հետաքրքրական գրքի հեղինակը Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայայի մայրն էր՝ Ելիզավետա Վասիլևնա Կրուպսկայան: Եվ գիրքն էլ նվիրված է Նադեժդա Կրուպսկայայի մանկությանը:

Ելիզավետա Վասիլևնան երկար տարիներ, մինչև իր մահը (1915 թ.), դժվարին պահերին միշտ գտնվում էր Նադեժդայի և Լենինի կողքին: 1898 թվին նա աղջկա հետքերով հասավ Շուշենսկոյե, հետո Կրուպսկայայի և Լենինի հետ ապրեց տարագրության մեջ: Շվեյցարիայում նա դստերը օգնում էր ոչ միայն տնային գործերում, այլև անլեգալ գրականությունը Ռուսաստան տեղափոխելիս:

## «ԵՂԻՐ ՊԱՏՐԱ՛ՍՏ»

Դա գրեթե չորս տասնամյակ առաջ էր: 1922 թ. միլիոնավոր փոքրիկ տղաների ու աղջիկների կրծքին առաջին անգամ փողփողաց մեր երկրի երեք սերունդների՝ կոմունիստների, կոմերիտականների ու պիոներների անխախտ դաշինքը խորհրդանշող կարմիր վզկապը: Այդ երջանիկ ու հպարտ փոքրիկները մեր երկրի առաջին պիոներներն էին, նրանք, որ այսօր սպիտակած մազեր ունեն, ձեր սիրելի ուսուցիչներն են, ձեր հայրիկներն ու մայրիկները: Մոտ քառասուն տարի առաջ նրանց շուրթերից առաջին անգամ հնչեց.

— Մի՛շտ պատրաստ:

Եվ ահա այսօր էլ, հավաքների ու հավաքույթների ժամանակ, հանդիսավոր իրադրության մեջ պիոներական ճամբարում՝ բոցկլտացող խարույկի ցոլքերի ներքո, պիոներներին հաճախ են դիմում այս կոչով.

— Կոմունիստական կուսակցության գործի պայքարին եղիր պատրա՛ստ:

եվ հո շուրթերից, այսօրվա պիոներ, ինչպես և տարիներ առաջ, հնչում է.

— Մի՛շտ պատրաստ...

Մեծ և խորն է այս խոսքերի իմաստը: Բայց արդյո՞ք բոլորին է հայտնի, որ այդ կոչը շատ ավելի հնից է գալիս, որ այն եղել է հեղափոխության անդրանիկ մարտիկների նշանաբանը, որով նրանք համախմբվել են ու պայքարել հանուն նոր կյանքի ու մարդկության երջանիկ ապագայի: «Եղիր պատրա՛ստ»,— ասում էր Լենինը կուսակցության անդամներին, որոնց չէին սարսափեցնում ո՛չ դժվարությունները, ո՛չ հալածանքները, և լենինյան կուսակցությունը միշտ պատրաստ էր ու, երբ եկավ հեղափոխության համար հարմար պահը, նա իր ետևից տարավ բանվորներին ու գյուղացիներին և տապալեց հին կարգերը:

Լենինը բանվորական գործի համար պայքարող մարտիկներին երբ կոչ էր անում լինել պատրաստ, առաջին պատանի պիոներները դեռ չէին ծնվել: Պատանի պիոներները հետո իրենք որոշեցին հավատարիմ լինել Լենինի պատգամներին: 1922 թ. կոմերիտմիության 5-րդ համագումարը որոշում ընդունեց Համամիութենական պիոներական կազմակերպության ստեղծման մասին, Ն. Կ. Կրուպսկայայի խորհրդով Լենինի կոչը՝ «Եղիր պատրա՛ստ», դարձավ և՛ պիոներների նշանաբանը:

Պիոներների շատ սերունդներ է տեսել մեր երկիրը: Նրանց բոլորի նման, այսօրվա պիոներները նույնպես իրենց առջև նպատակ են դնում լավ սովորել, լինել համախմբված, օգնել ու կազմակերպել հոկտեմբերիկներին, դառնել նրանց գիտակից ու խելացի: Նրանք սովորում են նոր կյանք կառուցել, որպեսզի դառնան Լենինի գործի շարունակողները, որպեսզի վաղը նրանց կոչին՝ «Եղիր պատրա՛ստ», ապագայի պիոներները պատասխանեն.

— Մի՛շտ պատրաստ:



Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 4 ապրիլ 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Լենինը իմ Հայաստանում — Ս. ԽԱՐԱՋՅԱՆ . . . 2
2. Լենին — Վ. ԲԱՐԱՆՈՎՍԿԱՅԱ . . . 3
3. Մենդյան օրը — Բ. ՆԻԿՈԼՍԿԻ . . . 4
4. Մեր վառ դրոշը — Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ . . . 5
5. Սպիտակ հացը — Ն. ԶԱՐՅԱՆ . . . 6
6. Իլյիչի ժպիտը — խոսք Վ. ՎԼԱԴԻՄԻՐՈՎԻ, երաժշտ. Ա. ԼՈՒՍԻՆՅԱՆԻ . . . 8
7. Բանաստեղծություններ — Թ. ԲՈԼՈՐՋՅԱՆ . . . 9
8. Պատմում են փաստաթղթերը . . . 12
9. Ես հպարտանում եմ իմ երեխաներով — Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ 19
10. Լենինյան փաստաթղթերը — Կ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ . . . 21
11. «Եղիր պատրա՛ստ» . . . 22
12. Գիտե՞ք, որ... . . . 22

Շապիկի առաջին էջը՝
նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ Ա. Ա. ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15,
հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 05433: Պատվեր՝ 207: Տպաքանակ՝ 69900: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 27/III. 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:
Գինը՝ 10 կ.

